Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 15 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Կ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86:

Գինը 50 կոպ.




# ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

Ռազմա-Ծովային Նավատորմի օրը, սովետական ռազմա-ծովային ուժերի ստուգատեսի օրը, մեր ժողովուրդն այս տարի նշում է քաղաքական ու աշխատանքային մեծագույն վերելքի պայմաններում։

Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, մեծ Ստալինի առաջնորդությամբ սովետական ժողովուրդը կառուցում է կոմունիզմի հոյակապ շենքը։ Մեր երկրի աշխատավորները համակված են միասնական ձգտումով—հետպատերազմյան ստալինյան հնգամյակը կատարել չորս տարում։

Իրագործելով կոմունիզմի կառուցման վիթխարի ծրագիրը, մենք չպետք է մոռանանք, որ քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, շարունակում է գոյություն ունենալ մեր Հայրենիքի վրա հարձակվելու վտանգը։ ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստների կողմից գլխավորվող ռեակցիոն ուժերն իրենց ագրեսիվ գործողություններով նպաստում են [illegible] գործին։

Սովետական Միությունը հետևողականո-
րեն վարում է խաղաղասիրական քաղաքակա-
նություն, գլխավորում է մարդկության բո-
լոր առաջադիմական ուժերին, որոնք պայ-
քար են մղում կայուն ու երկարատև դեմո-
կրատական խաղաղության համար, ժողո-
վուրդների անվտանգության համար։ Իրա-
գործելով այդ քաղաքականությունը, Սովե-
տական պետությունը ամուր հենվում է իր
ամենահզոր զինված ուժերի վրա, որոնք
արթուն և հուսալի պահպանում են սովետա-
կան ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխա-
տանքը։

Երեսուն տարի է մեր զինված ուժերը ան-
սասան կանգնած են Հոկտեմբերյան Սո-
ցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նվաճում-
ների պահպանության, Սովետական Միու-
թյան պետական շահերի պահպանության
գործում։

Այդ տարիների ընթացքում մեր բանակը
և նրա հավատարիմ օգնականը՝ նավատոր-
մը բազմիցս կրծքով պաշտպան են կանգնել
Սովետական պետության և միշտ կործանիչ
հակահարված են հասցրել նրա թշնամինե-
րին։ Հայրենական Մեծ պատերազմում
իրենց պատմական հաղթանակով Սովետա-
կան Բանակը և Ռազմա-Ծովային Նավա-



տորմը բազմապատկեցին մեր Հայրենիքի
փառքը։

***

Բոլշևիկյան պարտիան, Լենինը և Ստալինը
միշտ հսկայական նշանակություն են տը-
վել Ռազմա-Ծովային Նավատորմին, դի-
տելով այն իբրև սովետական պետության
զինված ուժերի անբաժանելի բաղկացու-
ցիչ մասը։

Արդեն քաղաքացիական պատերազմի
տարիներին նավատորմը, ռազմական ծո-
վայինները գործունյա աջակցություն էին
ցույց տալիս մեր ցամաքային զորքերին
նրանց մարտերում ընդդեմ ինտերվենտների
ու սպիտակգվարդիականների։

Ցարիցինի և Պետրոգրադի պաշտպանու-
թյան մեջ, Վոլգայի և Կամայի վրա տեղի ու-
նեցած մարտերում, Կասպիայի համար,
Դնեպրի, Լադոգայի վրա, Ազովի ծովում
մղված պայքարի մեջ սովետական ծովային-
ները թշնամուն հասցրած իրենց խորտակիչ
հրետանային հարվածներով, հակառակորդի
թևերում և թիկունքում դեսանտներ իջեցնե-
լով հաջողությամբ աջակցում էին մեր ցա-
մաքային զորքերի գործողություններին։ Մեծ
Ստալինը անձամբ ղեկավարում էր այդ
գործողությունները և բազմիցս նշել է նա-

վատորմի ծառայությունները, ծովայինների արիությունն ու խիզախությունը։

Ժողովրդի երախտագետ հիշողության մեջ ընդմիշտ կպահպանվեն քաղաքացիական պատերազմի հերոս-ծովայինների անունները՝ լեգենդար գրահագնացքի հրամանատար նավաստի Անատոլիյ Ժելեզնյակովի, Վոլգայի գետանավատորմի կոմիսար Նիկոլայ Մարկինի, Կասպիական նավատորմիկի կոմիսար Վլադիմիր Պոլուխինի, Հյուսիսային Դվինայի գետանավատորմի հրամանատար Պավլին Վինոգրադովի և շատ ուրիշների, որոնք զոհվեցին Սովետների երիտասարդ ռեսպուբլիկայի համար մղված պայքարում։

Քաղաքացիական պատերազմն ավարտելուց հետո նավատորմը, պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի հոգատարության շնորհիվ, արագորեն վերականգնում էր իր ուժերը, զարգանում էր և ամրապնդվում։ Մեր նավատորմի շինարարությունը առանձնահատուկ թափ ստացավ ստալինյան հնգամյակների տարիներին, մեր երկրի ինդուստրիալիզացիայի տարիներին։

Բալթիական և Սևծովյան նավատորմների աճմանն ու ամրապնդմանը զուգընթաց, ընկեր Ստալինի նախաձեռնությամբ շատ բան արվեց Հյուսիսում և Հեռավոր Արևելքում



ծովային պաշտպանություն ստեղծելու համար։ 1932 թվականին սկսեց ստեղծվել Խաղաղօվկիանոսյան նավատորմը. 1933 թվականին սկիզբը դրվեց Հյուսիսային նավատորմի ստեղծմանը։

Առաջին երկու հնգամյակների տարիներին սովետական Ռազմա-Ծովային Նավատորմը սոցիալիստական ինդուստրիայից ստացավ հարյուրավոր նոր մարտական ռազմանավեր։

1938 թվականին, երբ մեր երկիրն արդեն ուներ հզոր սոցիալիստական ինդուստրիա, պարտիան և կառավարությունը առաջադրեցին սովետական ծովային ու օվկիանոսային մեծ նավատորմ կառուցելու խնդիրը։

Ընկեր Ստալինը անդուլ կերպով զբաղվում էր նավատորմի կառուցման, ռազմանավերի հրետանային ու ականանետային սպառազինության հարցերով, ծովայինների որակյալ կադրեր դաստիարակելու հարցերով, անձնակազմի համար առավել բարենպաստ պայմանների ստեղծումով։

Մեր նավատորմն ստանում էր ժամանակակից տեխնիկայի վերջին խոսքով կառուցված նորանոր ռազմանավեր։ 1938 թվականին մարտանավերի կառուցումը նախորդ տարվա համեմատությամբ աճեց հինգ

անգամ: 1940 թվականին շարք մտած սուզանավերը 3 անգամ ավելի են քան նախորդ տարում:

Սովետական Միության վրա հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը խանգարեց ռազմա-ծովային շինարարության պլանների ավարտումը: Բայց մեր նավատորմն այդ ժամանակ արդեն ուներ ամեն կարգի մարտական ռազմանավեր, առափնյա հզոր հրետանի, մեծաթիվ ծովային ավիացիա, սարքավորված բազաներ, նորագույն մարտական տեխնիկա և ամենաարժեքավոր բանը-կոմունիզմի մեծ գործին անսահման նվիրվածության ոգով դաստիարակված կադրեր:

Կատարելով մեծ առաջնորդ և զորավար ընկեր Ստալինի ստրատեգիական պլանները, նավատորմը Հայրենական պատերազմի տարիներին ծովից հուսալիորեն ապահովում էր ցամաքային ռազմաճակատների թևերի անվտանգությունը: Նավատորմն օգնում էր հակառակորդի զորքերի ուժասպառմանը և նրանց հուժկու հարվածներ հասցնելուն: Մեծ ակտիվությամբ աչքի ընկան մեր նավատորմի այն գործողությունները, որոնք կոչված էին խախտելու գերմանացիների ծովային կոմունիկացիաները և ավե-



րելու թշնամու առափնյա օբեկտները՝ ծովային բազաները, նավահանգիստներն ու առափնյա մարտկոցները:

Անթառամ փառքով օծեց նավատորմը իր մարտական դրոշները, հերոսաբար մասնակցելով Օդեսայի, Սևաստոպոլի, Ստալինգրադի, Մերձբևեռային շրջանի, Լենինգրադի, Կովկասի ափերի պաշտպանությանը:

Մասնակցելով Սովետական Բանակի մեծ հարձակմանը, ցամաքային զորքերի հետ սերտ փոխգործողությամբ, նավատորմի ռազմանավերը շատ հեռու շարժվեցին դեպի արևմուտք:

Ընկեր Ստալինը բարձր է գնահատել սովետական Ռազմա-Ծովային Նավատորմի գործողությունները Հայրենական Մեծ պատերազմում: Նա գրել է.

«Ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ պատերազմում մեր պետության Ռազմա-Ծովային Նավատորմը Կարմիր Բանակի հավատարիմ օգնականն էր...

Կարմիր Բանակի պաշտպանության և հարձակման ժամանակաշրջանում մեր նավատորմը հուսալի կերպով պաշտպանում էր Կարմիր Բանակի ծովին հենված թևերը, լուրջ հարվածներ էր հասցնում հա-

կառավարողի առևտրական նավատորմին ու նավագնացությանը և ապահովեց իր կոմունիկացիաների անխափան գործունեությունը... Բալթիկ, Սև և Բարենցի ծովերում, Վոլգայի, Դանուբի և Դնեպրի վրա սովետական ծովայինները պատերազմի չորս տարվա ընթացքում նոր էջեր գրեցին ռուսական ծովային փառքի մատյանում։ Նավատորմը մինչև վերջը կատարեց իր պարտքը Սովետական Հայրենիքի հանդեպ։

1945 թվականի սեպտեմբերի սկզբներին, այն վճռական հարվածից հետո, որ Սովետական Միության զինված ուժերը հասցրին իմպերիալիստական Ճապոնիային, վերջինս կապիտուլյացիայի ենթարկվեց։ Երկրորդ համաշխարհային պատերազմի այդ ավարտական էտապում ևս Խաղաղօվկիանոսյան նավատորմը և Ամուրյան Կարմրադրոշ գետանավատորմը, աջակցելով Սովետական Բանակի սրընթաց հաղթական հարձակմանը, հետևողականորեն կենսագործեցին ստալինյան իդեան կարևորագույն ստրատեգիական խնդիրների լուծման ժամանակ զինված ուժերի բոլոր տեսակների համատեղ մարտական գործողությունների մասին։

Մեր զինված ուժերի համաշխարհային-պատմական հաղթանակները կապիտալիս-



տական կարգերի հանդեպ սովետական սոցիալիստական հասարակարգի առավելությունների ամենապայծառ ապացույցն են, կապիտալիստական երկրների ռազմական կազմակերպության հանդեպ սովետական ռազմական կազմակերպության գերազանցության վկայությունը։

Պատմության մեջ չտեսնված այն մասսայական հերոսության աղբյուրը, որ թշնամիների դեմ մղած մարտերում երևան էին բերում սովետական ռազմիկները, այդ թվում և ռազմական ծովայինները, ջերմ սերն է դեպի իրենց սոցիալիստական մեծ Հայրենիքը։

Բոլշևիկյան պարտիայի, մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի կողմից դաստիարակված ու ղեկավարվող սովետական ռազմիկները նվաճեցին պատմական հաղթանակը և խաղաղություն բերին հարազատ երկրին ու երկրագնդի բոլոր ժողովուրդներին։

Երեք տարի է անցել Հայրենական Մեծ պատերազմն ավարտելուց հետո— ամբողջ սովետական ժողովրդի լարված, հերոսական աշխատանքի երեք տարիներ։ Արագ տեմպերով վերականգնվում են թշնամու արշավանքից տուժած քաղաքներն ու գյուղերը, ֆաբ-

բիկաներն ու գործարանները, սովխոզներն ու կոլխոզները։

Ժամանակից առաջ անցնելով, սովետական երկրի աշխատավորները հաջողությամբ կատարում են հետպատերազմյան ստալինյան հնգամյակի առաջադրանքները։

Պատերազմի իմպերիալիստական հրձիգների զավթողական դիտավորություններին Սովետական Միությունը հակադրում է կայուն ու երկարատև խաղաղության, բոլոր երկրների ազնիվ, դեմոկրատական սկզբունքների վրա հիմնված համագործակցության իր հաստատ կամքը։ ՍՍՌՄ-ն իր արդարացի արտաքին քաղաքականության մեջ հենվում է նոր դեմոկրատիայի երկրների, խաղաղության և ազատության բոլոր բարեկամների աջակցության վրա։

Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը, ամբողջ երկրի հետ միասին վերակառուցվելով խաղաղ դրության, անընդհատ կատարելագործվում են, արթուն պահպանելով իրենց ժողովրդի ստեղծարար աշխատանքը և հանդիսանալով ՍՍՌՄ արտաքին քաղաքականության հուսալի հենարանը։

Սովետական ռազմիկներն զգում են բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության, անձամբ ընկեր Ստալինի ամենօր-



յա մեծագույն հոգատարությունը։ Մեկ տարի առաջ ընկեր Ստալինը այցելելով «Մոլոտով» հածանավը, երթի ընթացքում ուշադիր դիտում էր Սևծովյան Նավատորմի այդ առաջավոր ռազմանավի անձնակազմի հատակ գործողությունները։ Մեծ առաջնորդի անմոռանալի այցելությունը «Մոլոտով» հածանավի անձնակազմին, ընկեր Ստալինի հայրական ջերմ խոսքերը, որոնք լի են հոգատարությամբ դեպի ռազմական ծովայինները, հայրենասիրական նոր վերելք առաջացրին բոլոր սովետական ռազմիկների մեջ։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ռազմա-ծովային ուժերի առջև կանգնած են իրենց հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու, պատերազմի ամենահարուստ փորձին լիովին տիրապետելու պատասխանատու խնդիրներ։

Նավատորմին նոր ռազմանավեր տալու համար երկիրը հետպատերազմյան հնգամյակի տարիներին վերաստեղծում է նավաշինական հզոր բազան։ Վերականգնվում են նավաշինական գործարանները, կատարվում է նոր ձեռնարկությունների շինարարություն։ Նավաշինարաններում կառուցվում են նոր առաջնակարգ մարտանավեր։

Մարտական տեխնիկայի և ռազմա-ծովա-

յին զենքի կատարելագործման հետ կապված լավագույն շատ նվաճումներ արդեն արժանացել են Ստալինյան մրցանակների։

Ուժերի ամբողջ լարումով սովորում են ռազմական ծովայինները, յուրացնելով պատերազմի փորձը, ամեն կերպ բարձրացնելով նավատորմի մարտական պատրաստությունը, ամրապնդելով իրենց շարքերում զինվորական կարգապահությունն ու կազմակերպվածությունը։

Լենինի-Ստալինի պարտիան, մեր ամբողջ ժողովուրդը համոզված են, որ Սովետական Բանակը և նրա հավատարիմ օգնականը՝ Ռազմա-Ծովային Նավատորմը այսուհետև էլ պատվով կկատարեն իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ։

Գեներալ Ն. ՏՈԿԱՐԵՎ

---

## ԶՐՈՒՅՑԻ ՊԼԱՆ

### «ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ»

1. ՍՍՌՄ զինված ուժերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի նվաճումների, սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքի հավատարիմ պահապանն են, մեր Հայրենիքի պետական շահերի հուսալի հենարանը։

2. Լենինը և Ստալինը— Սովետական Բանակի և



Ռազմա-Ծովային Նավատորմի ստեղծողներ ու ղեկավարներ։

3. Ռազմա-Ծովային Նավատորմը Սովետական Բանակի մարտական եղբայրն ու օգնականն է։ Ստալինյան իդեան՝ ցամաքային ուժերի, ավիացիայի և Ռազմա-Ծովային Նավատորմի մարտական սերտ փոխգործողությամբ զորքի բոլոր տեսակների միասնության մասին։

4. Սովետական ռազմական ծովայինները՝ Սովետների երիտասարդ ռեսպուբլիկայի համար, ինտերվենտների ու սպիտակգվարդիականների դեմ մղած մարտերում քաղաքացիական պատերազմի տարիներին։ Ծովայինների, նավատորմի մարտական ուժերի մասնակցությունը ընկեր Ստալինի ղեկավարած կարևորագույն օպերացիաներին։

5. Բոլշևիկյան պարտիայի, Լենինի և Ստալինի հոգատարությունը քաղաքացիական պատերազմից հետո նավատորմի վերածնության, ՍՍՌՄ ծովային հզորությունն ամրապնդելու մասին։

6. ՍՍՌՄ-ը որպես ծովային մեծ տերություն։ Մեր Հայրենիքի ափերը ողողող ծովերի և օվկիանոսների նշանակությունը սոցիալիզմի երկրի էկոնոմիկայի համար։ Ստալինյան հնգամյակները և հայրենական նավաշինության հաստատուն բազայի ստեղծումը։

7. Ռազմա-Ծովային Նավատորմը Հայրենական Մեծ պատերազմում։ Ընկեր Ստալինի գնահատականը պատերազմում նավատորմի դերի մասին, տրված 1945 թվականի հուլիսի 22-ի նրա հրամանում։

*8. Ռազմա-Ծովային Նավատորմի զարգացման հետպատերազմյան ժամանակաշրջանը։ Սովետական ժողովուրդը, կատարելով հետպատերազմյան ստալինյան հնգամյակը, միշտ հիշում և հոգ է տանում սոցիալիստական պետության զինված ուժերի մասին, ամրապնդում է իր Ռազմա-Ծովային Նավատորմը— մեր Հայրենիքի ծովային սահմանների հուսալի պաշտպանին։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Վ. Ի. ԼԵՆԻՆ, Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին:

2. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին:

3. Ա. Ն. ԲՈՒԼԳԱՆԻՆ.— Սովետական զինված ուժերի երեսուն տարին: *Զեկուցում Մոսկվայի Մեծ թատրոնում տեղի ունեցած հանդիսավոր նիստին, 23 II 1948 թ. «Սովետական Հայաստան» 24 II, 1948 թ.։*

4. Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Ստալինը և Կարմիր Բանակը: *Հայպետհրատ, 1935 թ.։*

*5. Ընկեր Ստալինի հյուրընկալությունը ռազմական ծովայինների մոտ (ընկեր Ստալինի կողմից «Մոլոտով» հածանավի անձնակազմին կատարած այցելության մասին)։ «Պրավդա», 9 սեպտեմբերի 1947 թ.։ «Սովետական Հայաստան» 10 սեպտեմբերի, 1947 թ.։*

6. Ի. ԻՍԱԿՈՎ.— Ռազմա-Ծովային նավատորմը Հայրենական պատերազմում: *Հայպետհրատ, 1943 թ.։*

---



# ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՏՈՐԸ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՕՐԵՐԻՆ

*Սովետական գյուղի աշխատավորությունը ջանքեր չի խնայում բարձր որակով ավարտելու գյուղատնտեսական տարվա աշխատանքները, սեղմ ժամկետում և անկորուստ հավաքելու բերքը։*

*Գյուղատնտեսական աշխատանքների ներկա վճռական շրջանում, մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված պարտիական կազմակերպությունների ու բոլոր ագիտատորների առաջ մասսայական-քաղաքական աշխատանքի լայն ծավալման ուղղությամբ։*

*Մասսայական-քաղաքական ագիտացիայի խնդիրն է՝ մոբիլիզացնել գյուղի բոլոր աշխատավորների ուժերը արագ ու անկորուստ հավաքելու բերքը, ժամկետից շուտ կատարելու հացամթերումների և ՄՏ կայանների աշխատանքի համար սահմանված բնավարձի պլանները։*

*Հացաբույսերի արագ ու համատարած*

հասունացումը պահանջում է բոլոր կոլխոզնիկների, կոմբայնավարների, տրակտորիստների և գյուղատնտեսության մյուս աշխատողների ուժերի մեծ լարում, աշխատանքի բարձր կազմակերպվածություն։ Բերքահավաքի աշխատանքների հաջողության տեսակետից վճռական նշանակություն ունի ժամանակի գործոնը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքում այդ հանգամանքի վրա պետք է սրել կոլխոզնիկների, ՄՏ կայանների և գյուղի բոլոր աշխատողների ուշադրությունը։

Բանավոր ու գրավոր ագիտացիայի բոլոր ձևերով ու մեթոդներով գյուղի բոլոր աշխատավորներին պետք է բացատրել մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի այն ցուցումը, որ «Բերքահավաքը սեզոնային գործ է, և նա չի սիրում երկար սպասել. հավաքեցիր ժամանակին՝ շահեցիր, ուշացար բերքահավաքում՝ տանուլ տվիր»։

Ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը պետք է ուղղել բարձրացնելու կոլխոզային գյուղատնտեսության արտադրական ակտիվությունը, է՛լ ավելի ամրապնդելու աշխատանքային կարգապահությունը, խթել ինքնահանգստացման տրամադրություններին։ Որպեսզի ագիտա-



տորների զրույցները մոբիլիզացնող և համոզիչ լինեն, նրանք պետք է լինեն առաջավորների փորձից և ձգտեն բոլորի սեփականությունը դարձնել գյուղատնտեսության առաջավորների, բարձր բերքի վարպետների ու նորարարների աշխատանքի մեթոդները։ Իսկ նրանց անձնուրաց աշխատանքի դրական փորձի օրինակները մեզ մոտ բազմաթիվ են։

Շատ պարտիական կազմակերպություններ ու ագիտկոլեկտիվներ օրինակելիորեն են կազմակերպել այդ փորձի մասսայականացումը։ Այսպես օրինակ. Ախուրյանի շրջանի ՄՏ կայանի կոմբայնավար ընկ. Ռուբեն Սարգսյանը կոմբայնի տեխնիկական խնամքը և անձնակազմի աշխատանքը օրինակելիորեն կազմակերպելու շնորհիվ, բերքահավաքի առաջին իսկ օրերին օրական հավաքեց 18—20 հեկտարի բերք։ Կոմբայնի անձնակազմը սոցմրցման պայմանագիր կնքեց Ա. Մանուկյանի կոմբայնի անձնակազմի հետ ու պարտավորվեց է՛լ ավելի բարձրացնել մեքենայի արտադրողականությունը։ Ընկ. Սարգսյանը իր մեքենայի վրա ամրացրեց 6 լապտեր և հուլիսի 22-ին Շիրակ գյուղի դաշտում, աշխատելով մինչև

գիշերվա ժամը 3-ը, հավաքեց 24 հեկտարի բերք։

Շրջանի պարտիական կազմակերպությունները անմիջապես ձեռնամուխ եղան անվանի կոմբայնավարի աշխատանքի փորձի մասսայականացմանը։ Շրջկենտրոնում տպագրվեցին 400 օրինակ հատուկ թերթիկներ՝ նվիրված նրա աշխատանքին ու տարածվեցին շրջանի բոլոր գյուղերում։ Ագիտատորները լայն կերպով մասսայականացրին առաջավոր կոմբայնավարի փորձը, նրա ձեռք բերած արտադրական նվաճումները, կոչ անելով բոլոր կոլխոզնիկներին, կոմբայնավարներին, տրակտորիստներին հետևել ընկ. Սարգսյանի օրինակին բերքահավաքը սեղմ ժամկետում և որակով ավարտելու համար։

Շնորհիվ այդ աշխատանքի, շրջանում ավելի լայն ծավալ ստացավ սոցիալիստական մրցումը կոլխոզնիկների և ՄՏ կայանի աշխատողների մեջ՝ հանուն բերքահավաքի բարձր տեմպի ու որակի։ Մասսայական-քաղաքական աշխատանքի այս գովելի օրինակը պետք է տարածել բոլոր շրջաններում ու կոլխոզներում։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի հաջող կազմակերպման օրինակ է տալիս



Կոտայքի շրջանի Հացավան գյուղի ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է նույն գյուղի դպրոցի դիրեկտոր ընկ. Խանգելդյանը։ Նա ամսական 2—3 անգամ ագիտատորների սեմինար պարապմունք է անցկացնում և շաբաթական երկու անգամ հրահանգավորում է կոնկրետ հարցերի շուրջը զրույցներ կազմակերպելու համար, ելնելով կոլխոզի առաջ կանգնած կոնկրետ խնդիրներից։ Բոլոր ագիտատորներն ապահովված են լրագրերով, ստանում են «Ագիտատորի բլոկնոտ» և սիստեմատիկաբար կազմակերպում են համապատասխան նյութերի ընթերցումը կոլխոզնիկների շրջանում։

Լավագույն ագիտատորներ Հ. Վարդանյանը, Ս. Կարապետյանը, Ս. Ղարիբյանը, բացի լրագրային նյութերի ընթերցումից, հաճախակի կազմակերպում են զրույցներ զանազան հրատապ հարցերի շուրջը, հոգ են տանում և ժամանակին ապահովում կոլխոզնիկների լույս ընծայումը, որոնցում լուսաբանում են առաջավորների փորձը և խարազանում հետ մնացողներին։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքի հաջող կազմակերպման, կոլխոզնիկների արտադրական ակտիվության բարձրացման շնորհիվ Հացավանի կոլխոզը ժամկետից շուտ ավար-

տեց հացաբույսերի հունձը և հացամթերումների պլանը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքում հատուկ ուշադրություն պետք է դարձնել սոցիալիստական մրցության և ստանձնած պարտավորությունների կատարման վրա։ Պարտավորությունների կատարման արդյունքները պետք է լուսաբանել պատի թերթերում, խլյիշովկաներում, ցուցադրական և բանավոր ագիտացիայի միջոցով։ Զրույցների ընթացքում կոլխոզնիկների և ՄՏ կայանների աշխատողների ուշադրությունը պետք է դարձնել այն կոնկրետ խնդիրների վրա, որ կանգնած են նրանց առաջ։ Յուրաքանչյուր աշխատողի պետք է բացատրել կոլխոզի, բրիգադայի, օղակի, տրակտորային բրիգադայի առաջ ծառացած խնդիրների բովանդակությունը և բոլշևիկյան խոսքով մոբիլիզացնել նրանց այդ խնդիրների կատարման համար։ Այդպիսի աշխատանք են կատարում մեր շատ ագիտատորներ։ Ալավերդու շրջանի Ճոճկան գյուղի կոլխոզի 4-րդ բրիգադայի բարձր բերքի կոմերիտական օղակի ագիտատոր ընկ. Թումյանն իր բովանդակալից զրույցներով, աշխատանքի նկատմամբ ունեցած անձնական օրինակով մոբիլիզացնում է բրիգադայի ան-



դամներին արագ ու անկորուստ հավաքելու բերքը։ Նրա օղակը պայքարում է հեկտարից 25-ից 26 ցենտներ բերք ստանալու համար և օղակի անդամների մեծ մասը զգալի չափերով գերակատարում են արտադրական նորմաները։ Ինչպես ընկ. Թումյանը, այնպես էլ շատ ագիտատորներ գործնական հարցերի մասին խոսելիս բացատրում են նաև ընդհանուր քաղաքական բնույթի հարցեր և դա միանգամայն ճիշտ է։

Անհրաժեշտ է սիստեմատիկաբար բացատրել աշխատավորներին բերքահավաքի տնտեսական ու քաղաքական հսկայական նշանակությունը, ամեն մի աշխատավորի գիտակցությանը հասցնել, որ բերքահավաքի հաջող անցկացումը և պետական պարտավորությունների արագ կատարումը է՛լ ավելի կամրացնի սովետական պետությունը, կավելացնի կոլխոզների հարստությունը, ինչպես և կբարձրացնի կոլխոզնիկների նյութական բարեկեցությունը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքն անհրաժեշտ է կառուցել ինչպես մեր ռեսպուբլիկայում, այնպես էլ եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում ու մարզերում առաջավոր կոլխոզների գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարի

օրինակելի փորձի վրա, գյուղատնտեսության զարգացման ստալինյան նոր հնգամյակի խնդիրների հաջող կատարման օրինակների վրա։ Այդպիսի զրույցների մոբիլիզացնող դերը հսկայական է։

Այդ հարցերի, ինչպես և պարտիայի ու կառավարության որոշումների, Սովետական Միության ներքին ու միջազգային իրադարձությունների պարզաբանումը կենտրոնական տեղ պետք է գրավի ագիտատորների զրույցներում։

Պետք է հասնել այն բանին, որ իբրև արդյունք այդ բեղմնավոր աշխատանքի, ռեսպուբլիկայի բոլոր շրջաններն ու կոլխոզները ժամանակին ու անկորուստ ավարտեն բերքահավաքը, կատարեն հացամթերումների և մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի համար սահմանված բընավարձի պլանները, մինչև վերջը կենսագործեն Հայաստանի կոլխոզնիկների կողմից ընկեր Ստալինին ուղարկված նամակում ստանձնած պարտավորությունները։

Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԲԱՐՁՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՀԶՈՐ ԶԵՆՔ Է ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԿԱՐԳԻ ԾԱՂԿՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

(Ընկ. Միկոյանի անվան կոլխոզի ագիտատոր ընկ. Խալաթ Մանուկյանի զրույցը № 4 բրիգադայի կոլխոզնիկների հետ)

Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան Լենինի շքանշանակիր կոլխոզը այս տարի, համեմատած 1947 թվի հետ, բարձր կազմակերպվածությամբ սկսեց գյուղատնտեսական աշխատանքները։ Կենսագործելով Համ. Կ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումները, կոլխոզն ընթացիկ տարում աճեցրել է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բարձր բերք։

Պարտիական կազմակերպությունը մոբիլիզացնում է կոլխոզնիկների ուժերը՝ Հայաստանի հողագործների կողմից ընկեր Ստալինին ուղարկված նամակում վերց-

*րած պարտավորությունները կատարելու համար։ Կոլխոզում տարվող ամենօրյա ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքը ուղղված է այդ պատվավոր ու պատասխանատու խնդրի իրականացմանը։ Վերջերս կոլխոզի բոլոր բրիգադաներում, ֆերմաներում և օղակներում կազմակերպվեցին զրույցներ «Աշխատանքային բարձր կարգապահությունը հզոր զենք է կոլխոզային կարգի ծաղկման համար մղվող պայքարում» թեմայով։*

*Ստորև տպագրում ենք նույն զրույցի համառոտ շարադրությունը, որը անցկացրել է № 4 բրիգադայում ագիտատոր ընկ. Խալաթ Մանուկյանը։*

*— Ընկերներ։ Ինչպես ձեզ հայտնի է Հայաստանի կոլխոզնիկների կողմից ընկեր Ստալինին ուղարկված նամակում մենք խոսք տվեցինք ստալինյան հնգամյակի երրորդ տարում աճեցնել հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների, խաղողի բարձր բերք և պատվով կատարել հարազատ պետության հանդեպ մեր ունեցած պարտավորությունները։*

*Դա մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիության երդումն էր ժողովուրդների հանճարեղ առաջնորդին, որը դար-*



*ձավ մեր աշխատանքների մարտական ծրագիրը։*

*Եվ դա հասկանալի է։ Որպեսզի հնգամյա պլանը կատարենք չորս տարում, ստեղծենք պարենամթերքների ու սպառման առարկաների առատություն, անհրաժեշտ է մեծ չափով գերազանցել բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման 1948 թվի պլանը։*

*Մեր կոլխոզը պատվով է կենսագործում մեծ Ստալինին տված խոստումը։ 1947 թվի 230 հեկտարի փոխարեն, այս տարի մշակում ենք 240 հեկտար բամբակենի։ Ընդարձակվել է հացահատիկային և մյուս կուլտուրաների ցանքերի տարածությունը։ Համեմատած անցյալ տարվա հետ, ընթացիկ տարում մեր կոլխոզը ստանում է հացահատիկի հարուստ բերք, կազմակերպված է ընթանում բերքահավաքը։ Ժամկետից շուտ կատարեցինք մեր առաջին պատվիրանը՝ հացահատիկի հանձնումը պետությանը։ Սպասվում է բամբակենու բարձր բերք։*

*Կոլխոզի առաջավոր բրիգադաներն ու օղակները պարտավորվել են այս տարի ստանալ հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների, խաղողի առատ բերք և այժմ բոլոր նախադրյալները կան, որ նրանք*

պատվով կկատարեն իրենց խոստումը։ Լենինի շքանշանակիր Ավետիս Հարությունյանի օղակը խոսք է տվել հեկտարից ստանալ 110 ցենտներ խաղող, Հովհաննես Աշոտյանի բրիգադան՝ 150 փութ հացահատիկ և այլն։

— Մեր կոլխոզում այս տարի գյուղատնտեսական աշխատանքներն ընթանում են կազմակերպված,— ասում է ընկ. Մանուկյանը,— դա արդյունք է այն բանի, որ զգալի չափով բարձրացել է աշխատանքային կարգապահությունը, կոլխոզնիկների գիտակցությունն ու պատասխանատվությունը կոլխոզի աշխատանքներում։

Սակայն այդ ամենը մեզ չեն կարող հանգստացնել։ Մենք պարտավոր ենք օր-ավուր ավելի լավ աշխատել, է՛լ ավելի ամրապնդել աշխատանքային կարգապահությունը կոլխոզում։

Վերցնենք, մեր № 4 բրիգադան։ Անցյալ տարի մենք մեծ ուշացումով հավաքեցինք հացահատիկն ու բամբակը, չկատարեցինք բերքատվության առաջադրանքը։ Այնինչ այս տարի բրիգադան ստացավ հացահատիկի առատ բերք և այն հավաքեցինք արագ ու անկորուստ։ Փարթամորեն աճում է բամբակենին և սպասվում է բարձր բերք։ Ո՞րն է



մեր բրիգադայի աշխատանքի հաջողության «գաղտնիքը»։

Վ. Մուրադյան (կոլխոզնիկ)— Որովհետև անցյալ տարի մեր բրիգադայի 40—45 անդամներից դաշտ էին դուրս գալիս 25—30 հոգի։

Խ. Մանուկյան. Ընկեր Մուրադյանը ճիշտ է նկատում, որ անցյալ տարի մեր բրիգադայում ընկած էր աշխատանքային կարգապահությունը, մի շարք կոլխոզնիկներ կոպիտ կերպով խախտում էին Գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը։

Երբ ազնիվ ու բարեխիղճ կոլխոզնիկները, բարձր գերադասելով կոլխոզի համաժողովրդական շահերը, պայքարում էին պատվով կատարել իրենց սրբազան պարտքը երկրի հանդեպ, նրանց կողքին մի շարք մարդիկ իրենց անձնական, սեփականատիրական շահերը հակադրում էին հանրային, համաժողովրդական շահերին։

Օրինակ, մեր բրիգադայից կոլխոզնիկուհի Սաթիկ Գասպարյանը երկար ժամանակ չէր մասնակցում կոլխոզի աշխատանքներին։

Ս. Գասպարյան (կոլխոզնիկուհի)— Դա ճիշտ է, բայց բոլորն էլ գիտեն, որ ես հիվանդության պատճառով միայն մեկ տարի

չեմ աշխատել կոլխոզում և մի քանի ամիս աշխատել եմ քաղաքի հիմնարկներից մեկում։

Հ. Ամիրյան (բրիգադիր)— Ինչո՞ւ, Սաթիկ, ճիշտ չես ասում. դու կոլխոզի աշխատանքներին չես մասնակցել ոչ թե մեկ, այլ երեք տարի։ Ոչ թե քո հիվանդությունն էր պատճառը, այլ այն, որ դու ամեն կերպ խուսափում էիր մասնակցել կոլխոզի աշխատանքներին։

Ս. Գասպարյան (կոլխոզնիկուհի)— Ի՞նչ ասեմ, սխալմունք լինում է։ Սխալվեցի և ես։ Ես խոսք եմ տվել իմ աշխատանքով վերացնել իմ այդ սխալը։

Հ. Ամիրյան (բրիգադիր)— Այդ արդեն ուրիշ բան է։ Այդպես պետք է վարվի ամեն մի ազնիվ կոլխոզնիկ։ Այդպես վարվեց մեր կոլխոզի անդամ Գրիգորը, որը լքել էր կոլխոզը և զբաղված էր այլ գործերով։ Կոլխոզի ընդհանուր ժողովը օգնեց նրան կանգնելու ազնիվ և ուղիղ ճանապարհի վրա։ Այժմ նա դարձել է մեր լավագույն աշխատողներից մեկը։ Սակայն այդպես չվարվեց Աննիկ Կարապյանը. չնայած նա երիտասարդ կին է, բայց արդեն 2 տարի է ինչ ոստում դուրս չի գալիս։ Վատն այն է, որ կոլխոզի վարչությունը միջոցներ ձեռք չի առնում նրա նկատմամբ։



Խ. Մանուկյան. Ճիշտ է, ընկեր Ամիրյան։ Անցյալ տարի մեր կոլխոզի անդամներից 37 հոգի չկատարեցին աշխօրերի մինիմումը, ինչպես օրինակ Պ. Մանուկյանը, Օ. Հակոբյանը, Հ. Շահինյանը և ուրիշները։ Այս տարի առաջին եռամսյակում աշխօրերի մինիմումը չկատարեցին 5 հոգի, որոնք կոլեկտիվի օգնությամբ հետագա ամիսներում կատարեցին մինիմումը։ Այս տարի կոլխոզային աշխատանքի վերադարձան նախկինում կոլխոզը լքած որոշ մարդիկ։ Կոլխոզում մեծապես բարձրացել է աշխատանքային կարգապահությունը։

Մեր խնդիրն է անողոք պայքար մղել ծույլերի, ձրիակերների դեմ, ովքեր փորձում են հասարակությանը տալ ավելի քիչ, իսկ նրանից ստանալ ավելի շատ և ամեն տեսակի բարիքներ։

Սոցիալիզմի օրոք աշխատանքի մարդիկ դարձան պատվավոր քաղաքացիներ, աշխատանքը դարձավ պատվի, փառքի, արիության և հերոսության գործ։ Մի՞թե անձնուրաց աշխատանքով իրենց փառքով չպսակեցին Նոր Բայազետի շրջանի «Սպարտակ», Սիսիանի շրջանի «Ավանգարդ», Ախտայի շրջանի Գր. Հարությունյանի անվան և այլ կոլխոզների բազմաթիվ աշխատավորներ, որոնք

արժանացան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման և պարգևատրվեցին շքանշաններով։

Բարձր բերքի վարպետների փորձով ու օրինակով մեր կոլխոզի բրիգադաները, օղակները և կոլխոզնիկները մտան համաժողովրդական մեծ պայքարի մեջ, պարտավորվելով 1948 թվին հասնել բարձր բերքատվության։

Մ. Ղարիբյան *(կոլխոզնիկ)— Խոսք ենք տվել, ուրեմն կկատարենք։*

Խ. Մանուկյան—*Այդ ճիշտ է։ Սաթիկ Թադևոսյանի ղեկավարած բարձր բերքի օղակը նույնպես պարտավորվել է, բայց…*

Ս. Թադևոսյան *(բարձր բերքի օղակավարուհի)— Բայցի մասին խոսք լինել չի կարող։ Պարտավորվել ենք յուրաքանչյուր հեկտարից ստանալ 25 ցենտներ հացահատիկ, 30 ցենտներ բամբակ, ուրեմն կկատարենք։*

Խ. Մանուկյան— *Բայց ինչո՞ւ ձեր օղակի առանձին անդամներ չեն կատարում իրենց օրվա առաջադրանքը։*

Ս. Թադևոսյան— *Օղակի 12 անդամներից միայն երեքը չէին կատարում բամբակենու քաղհանի օրական առաջադրանքը։ Դրանք հայրենադարձ ընկերներ են, որոնք ծանոթ չէին բամբակենու մշակությանը։ Մենք օգ-*



*նեցինք նրանց և նրանք այժմ սկսել են կատարել իրենց նորմաները։*

Խ. Մանուկյան— *Ճիշտ է, ընկ. Թադևոսյան, հենց այդ է սոցիալիստական մրցության էությունը, օգնել հետ մնացողներին հասնելու առաջավորներին։*

Վ. Մոնուկյան *(№ 3 օղակի օղակավարուհի)— Դեռ կտեսնենք ով կհաղթի մրցության մեջ, Թադևոսյանի օղակը, թե մերը. «Ճտերը աշնանը կհաշվենք»։*

Խ. Մանուկյան— *Մենք կտեսնենք. պետք է աշխատել այնպես, ինչպես կոլխոզնիկուհի Եղիսաբեթ Սողոմոնյանն է աշխատում։ Նա օրական քաղհանում է 2000 մետր բամբակենի և անցյալ տարի չանաքում էր 120—130 կիլոգրամ։*

Ն. Ղազարյան *(կոլխոզնիկուհի)— Ինձ որ հարցնես օրական հազիվ 20 կիլոգրամ հավաքեմ։*

Պ. Մանուկյան *(կոլխոզնիկուհի)— Բա էլ ո՞ր օրվա ցահելն ես, Նազիկ։ Ես խոսք եմ տվել օրական հավաքել 100—110 կիլոգրամ, իսկ դու չանաքի օրվա առաջադրանքն էլ չես կատարելու։ Սա՛, որ թամբալության ես սովորել, սովորել ես հով այգում աշխատել։*

**Խ. Մանուկյան**— *Ճիշտ ես ասում, Վայծառ մայրիկ։ Հարկավոր է լավ աշխատել, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Եթե մենք ուզում ենք իսկական կարգ ու կանոն մտցնել կոլխոզում, բազմապատկել հանրային հարստությունը, ստեղծել սպառման առարկաների առատություն, անհրաժեշտ է սանձահարել լոդրերին ու ցուփողներին և ամրապնդել աշխատանքային կարգապահությունը։*

*Ես վերջացնում եմ իմ զրույցը։ Բոլոր այն դիտողությունները, որ այստեղ արվեցին, ես տեղյակ կպահեմ կոլխոզի վարչությանը և պարտիական կազմակերպությանը։ Ես վստահ եմ, որ մեր բրիգադան պատվով կկատարի մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը և հաղթող դուրս կգա համաժողովրդական մեծ մրցությունից։*

---



*ԱԳԻՏԱՏՈՐ, ՔՈ ՀԵՐԹԱԿԱՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՍՍՌՄ ՊԵՏՊԼԱՆԻ ԵՎ ՍՍՌՄ ՊԵՏՊԼԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԼԻԱԶՈՐԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՀՐԱՊԱՐԱԿՎԱԾ ՏՎՅԱԼՆԵՐԸ՝ ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ԵՎ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1948 ԹՎԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԵՌԱՄՍՅԱԿԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ։*

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԵՎ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԱՃԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*1948 թվի երկրորդ եռամսյակի պլանը ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի գծով կատարվել է 106 տոկոսով։ 1948 թվի տարեկան պլանով սահմանված առաջադրանքը առաջին կիսամ-*

յակի արդյունաբերության համախառն արտադրանքի գծով գերակատարվել է 5 տոկոսով։

***

Ամբողջությամբ վերցրած 1948 թվի երկրորդ եռամսյակում ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1947 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ աճել է 24 տոկոսով։

1948 թվի երկրորդ եռամսյակում պլանից դուրս թողարկվել է զգալի քանակությամբ արդյունաբերական արտադրանք, այդ թվում սև և գունավոր մետաղներ, էներգետիկ ածուխներ, նավթամթերքներ, մեքենաներ և սարքավորում, հանքային պարարտանյութեր, ներկեր, անտառանյութեր և շինանյութեր, թուղթ, գործվածքներ, ռետինե կոշիկներ, կենդանական յուղ և բուսայուղ։

***

Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը 1948 թվի երկրորդ եռամսյակում կատարված է 109 տոկոսով։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1948 թվի երկրորդ եռամսյակում, 1947 թվի համա-



պատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 27 տոկոսով։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը 1948 թվի առաջին կիսամյակում կատարված է 102 տոկոսով։

***

Անցած եռամսյակում լավ է աշխատել Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանը։ 1948 թվի երկրորդ եռամսյակում Կոմպրեսորների գործարանում Ռ. Կ.—3—6 կոմպրեսորների արտադրությունը զգալի չափով բարելավվել է և դրանց արտադրությունը 1948 թվի երկրորդ եռամսյակի պլանի համեմատությամբ կազմել է 200 տոկոս, իսկ 1948 թվի առաջին եռամսյակի համեմատությամբ 330 տոկոս։

***

1948 թվի երկրորդ եռամսյակի համար ՍՍՌՄ-ում սահմանված արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը գերակատարվել է։ 1948 թվի առաջին կիսամյակում արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացված ընդհանուր արտապլանային խնայողությունը կազմում է մեկ միլիարդ 500 միլիոն ռուբլի։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

1948 թվականի ցանքատարածության աճը Միության մեջ բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների գծով, 1947 թվի համեմատությամբ, նախնական տվյալներով կազմում է ավելի քան 11 միլիոն հեկտար։

Կոլխոզներում և սովխոզներում գարնանացան ցորենի ցանքատարածության աճը անցած տարվա համեմատությամբ նախնական տվյալներով կազմում է 5,5 միլիոն հեկտար։

⁂

Գարնանացանը Հայկական ՍՍՌ կոլխոզներում կատարված է 100,5 տոկոսով։ Անցյալ տարվա համեմատությամբ ցանքատարածությունն ընդարձակվել է— բամբակինը՝ 7,2 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 25 տոկոսով և կարտոֆիլինը՝ 5,3 տոկոսով։

Ռեսպուբլիկայի ՄՏ կայանները գյուղատնտեսական գարնանային աշխատանքների մեքենայացման պլանը կատարել են 104,3 տոկոսով, այդ թվում գարնանավարի գծով՝ 117,9 տոկոսով, գարնանացանի գծով՝ 108,7 տոկոսով, ցելի գծով՝ 89, 9 տոկոսով։



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԿԱՊԻՏԱԼ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ԱՃԸ

Սովետական Միության բոլոր կապիտալ աշխատանքների ծավալը 1948 թվի առաջին եռամսյակում ժողովրդական ամբողջ տնտեսության գծով, 1947 թվի առաջին կիսամյակի համեմատությամբ կազմել է 126 տոկոս։

1948 թվի երկրորդ եռամսյակում կապիտալ շինարարության տեմպն արագացել է։ Կապիտալ աշխատանքների ծավալի աճը, 1947 թվի համապատասխան եռամսյակի համեմատությամբ, առաջին եռամսյակում կազմում է 19 տոկոս, իսկ երկրորդ եռամսյակում՝ 32 տոկոս։

1948 թվի երկրորդ եռամսյակում Հայկական ՍՍՌ կատարված կապիտալ աշխատանքների ծավալը պլանի համեմատությամբ կազմում է 100,4 տոկոս, իսկ 1947 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ՝ 103,3 տոկոս։

Միութենական ենթակայության խոշորագույն նորակառույցներից կապիտալ շինարարության պլանը լավ են կատարել Լենինականի Գուլպա-Տրիկոտաժ ֆաբրիկան՝ 314 տոկոսով և Ջանգեզուրի հանքվարչությունը՝ 134 տոկոսով։

***

Պարենային և արդյունաբերական ապրանքների վաճառքը Սովետական Միության պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրի մեջ 1948 թվի երկրորդ եռամսյակում զգալի չափով աճել է։ Հացի վաճառքը 1948 թվի երկրորդ եռամսյակում, 1947 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 50 տոկոսով, շաքարի վաճառքը 83 տոկոսով, մսամթերքներինը՝ 29 տոկոսով, բուսայուղերինը՝ 14 տոկոսով, հրուշակեղենինը՝ 29 տոկոսով, բամբակեղեն գործվածքները 38 տոկոսով, մետաքսեղեն գործվածքներինը՝ 34 տոկոսով, կաշվե-կոշիկինը 31 տոկոսով, ռետինե կոշիկինը ավելի քան երկու անգամ։

***

1948 թվի երկրորդ եռամսյակում բանվորների և ծառայողների ընդհանուր թիվը Սովետական Միության ժողովրդական տնտեսության մեջ, 1947 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է ավելի քան երկու միլիոն 200 հազար մարդով։

Բանվորների աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1948 թվի երկրորդ եռամսյակում, 1947 թվի երկ-



րորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 14 տոկոսով, այդ թվում մեքենաշինության մեջ՝ 21 տոկոսով, սև մետալուրգիայի մեջ՝ 17 տոկոսով, ածխարդյունաբերության մեջ՝ 11 տոկոսով։

Աշխատավարձի ֆոնդը ժողովրդական տնտեսության մեջ 1948 թվի երկրորդ եռամսյակում, 1947 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 8 տոկոսով։

***

Օկուպացումից ազատագրված շրջաններում արդյունաբերության համախառն արտադրանքը 1948 թվի երկրորդ եռամսյակում, 1947 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 41 տոկոսով։

1948 թվի առաջին կիսամյակում այդ շրջաններում անց են կացված կենտրոնացված կապիտալ աշխատանքներ 7,7 միլիարդ ռուբլու չափով, ըստ որում կառուցված և վերականգնված է մեկ միլիոն 300 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն՝ քաղաքներում և 63 հազար բնակելի տուն՝ գյուղերում։

# ԵՐԵՎԱՆԻ ՇՈԳԵՔԱՐՇԱՅԻՆ ԴԵՊՈՅԻ ՌԱՑԻՈՆԱԼԻԶԱՏՈՐՆԵՐԸ

Կարճ ժամանակամիջոցում մի քանի ռացիոնալիզատորական առաջարկություններ են արել Երևանի դեպոյի բանվորները։ Այստեղ ամբողջ կոլեկտիվը զբաղված է ստեղծագործական աշխատանքով։ Յուրաքանչյուր բանվոր ձգտում է իր ավանդը մտցնել հնգամյակը չորս տարում կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում։

Արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, հումքի խնայողության և աշխատանքի կազմակերպման նպատակով նորանոր միջոցներ ստեղծելու հոյակապ միտքն է համակել Երևանի դեպոյի առաջավոր բանվորներին։ Կարճ ժամանակամիջոցում մի քանի խրախուսելի առաջարկ են արել փականագործ Ն. Բարսեղյանը, Ա. Ալեքսանյանը, Ա. Ավագյանը, կաթսայագործ Ա. Հայրապետյանը, խառատ Ս. Պաղաթյանը և ուրիշները։

Առանձնապես աչքի է ընկնում փականա-



գործների ցեխի պարտկազմակերպիչ, ավտոմատչիկ-փականագործ ընկ. Նիկոլայ Բարսեղյանի առաջարկությունը։ Նա 15 տարուց ավելի է ինչ աշխատում է երկաթուղում, ծանոթ է երկաթուղու յուրաքանչյուր մանրուքին և հասկանում է նրա բոլոր պահանջները։ Ընկ. Ն. Բարսեղյանը, ձեռք բերելով մեծ փորձ, նկատել է, որ շոգեքարշի հաճախակի կանգ առնելու պատճառներից մեկն էլ նրա օդամղիչի ձողիկի մաշվելն է։ Օդամղիչն օգտագործվում է գնացքի արգելակներն աշխատեցնելու համար։ Ուստի դրա խափանումից էլ չեն աշխատում արգելակները, մի բան, որ կարող է պատահարների պատճառ հանդիսանալ։ Այս պատահարներից խուսափելու նպատակով մեկ-մեկ ու կես ամիսը մեկ անգամ անհրաժեշտ է լինում կանգնեցնել շոգեքարշը և ստուգել օդամղիչի ձողիկը, որը գրեթե միշտ էլ վերանորոգման կարիք է զգում։

Օդամղիչը կազմված է տարբեր մակերես ունեցող մխոցներից, երկաթե ձողիկից, սողնակից և այլ մանր մասերից, որոնց միջոցով օդամղիչն աշխատում է գոլորշու ազդեցության տակ։ Օդամղիչի այս մասերից երկաթե ձողիկը անընդհատ հարված է ստանում գլխավոր մխոցից, որից և հաճախակի

շարքից դուրս գալով վերանորոգման խիստ
կարիք է զգում։ Սակայն Երևանում այդ
վերանորոգումը կատարելը հնարավոր չէ։
Դա կարելի է վերանորոգել միայն Լենինա-
կանում կամ պետք է ստանալ նորը՝ Թբիլի-
սիից։ Այսպիսով ամեն անգամ ստիպված
են լինում կամ ուղարկել Լենինական վերա-
նորոգելու համար, կամ պահանջում են Թբի-
լիսիից նորը։ Թե այս և թե այն դեպքում
շոգեքարշը երկար ժամանակ մնում է կանգ-
նած դեպոյում։ Այս թերությունը վերացնե-
լու նպատակով փականագործ Ն. Բարսեղ-
յանը արել է մի առաջարկություն,
որի իրագործումն արդեն ունի ոչ միայն տն-
տեսական, այլ նաև միությենական նշանակու-
թյուն։ Ընկ. Բարսեղյանը առաջարկել է այդ
երկաթե ձողիկի փոխարեն բաց անել մի
քանի անցք, որոնց միջոցով առանց գլխա-
վոր մխոցից հարված ստանալու փոխվում է
գլորշու ինքնուրույն քայլքը։

Այսպիսով օդամղիչի կազմվածքից երկա-
թե ձողիկը դուրս մնալով, հնարավորություն
է ստեղծվում վերանորոգումը կատարել ոչ
թե 1—1 և կես ամիսը մեկ անգամ, այլ
11—12 ամիսը մեկ անգամ։

Այսպիսով ընկ. Բարսեղյանի առաջարկի
իրագործումը ապահովում է գնացքների ա-



պահով երթևեկությունը, խնայում է քանվո-
րական ուժը և նյութը։

Բարսեղյանի այս առաջարկությունը փոր-
ձարկվել է Լենինականում, իր արդյունքներն
ստանալուց հետո մեծ հավանության է ար-
ժանացել Անդրկովկասյան երկաթուղու վարչու-
թյան կողմից։

Ներկայումս ընկ. Բարսեղյանը և Ա. Ա-
վագյանը աշխատում են երկու նոր ռացիո-
նալիզատորական առաջարկների իրագործ-
ման վրա, որոնք հնարավորություն կտան
գնացքների արագ և ապահով երթևեկելուն։

Նշանավոր է նաև ցեխի վարպետ, պար-
տիայի անդամ, խառատ Սարգիս Պապաթյա-
նի առաջարկը։ Վարպետ Պապաթյանը վա-
ղուց է աշխատում երկաթուղում։ Նա նկա-
տել է, որ վերանորոգման ժամանակ լինում
է էլեկտրական էներգիայի մեծ գերածախս։
Նա մտածել է հենց այդ գերածախսի կր-
ճատման մասին։ Շնորհիվ խոր ուսումնասի-
րության նրան հաջողվել է այդ գործում հաս-
նել էլեկտրաէներգիայի զգալի տնտեսման։
Նրա առաջարկի շնորհիվ միաժամանակ կր-
ճատվում է բանվորական ուժը, խնայվում

նյութը և վերջապես բարձրանում է բանվորի
պատասխանատվությունը իր դազգահի նը-
կատմամբ։

Այս առաջարկությունը փորձարկվել է Ե-
րևանի դեպոյում և տվել է իր փայլուն ար-
դյունքը։

Երևանի դեպոյում եզակի չեն այսպիսի
ռացիոնալացումներն ու խելացի առաջար-
կությունները, դրանք բազմաթիվ են, մնում
է միայն դրանք խրախուսել և գործադրել։

Դեպոյի կոլեկտիվը, օգտագործելով առա-
ջավոր բանվորների փորձը և աշխատանքի
հիմքում դնելով նրանց ստեղծագործական
փորձը՝ այս տարվա առաջին կիսամ-
յակում 156 շոգեմեքենա վերանորոգելու փո-
խարեն վերանորոգել են 191 շոգեմեքենա։
Խնայվել է 341.554 կիլոգրամ վառելանյութ։
Վառելանյութը խնայելու գործում առանձ-
նապես աչքի է ընկնում Հայկական ՍՍՌ Գե-
րագույն Սովետի դեպուտատ ընկ. Մ. Հարու-
թյունյանի բրիգադան, որը մարտ ամսին
խնայել է 16.853 կիլոգրամ, իսկ հունիս ամ-
սին՝ 12.806 կիլոգրամ վառելանյութ։

Մ. ԲԱԼԱՅԱՆ

---

*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ*

# ԱՄՆ-Ի ՊՐՈԳՐԵՍԻՎ ՊԱՐՏԻԱՅԻ ՀԻՄՆԱԴԻՐ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Հուլիսի 23-ից 26-ը Պենսիլվանիա նահանգի
Ֆիլադելֆիա քաղաքում տեղի ունեցավ Ամերիկայի
Միացյալ Նահանգների երրորդ պարտիայի հիմնադիր
համագումարը։ Համագումարին մասնակցեցին 3.240
դելեգատ ու նրանց տեղակալները, չհաշված մեկ հա-
զար դիտորդներ, որոնք ներկայացնում էին քաղա-
քական տարբեր խմբեր ու կազմակերպություններ։
Համագումարին մասնակցելու համար դելեգատներ
էին եկել Ամերիկայի բոլոր 48 նահանգներից, Կո-
լումբիա ֆեդերալ օկրուգից, Պորտո-Րիկոյից և Հա-
վայան կղզիներից։ Ներկայացված էին ամերիկյան
բնակչության կանազան խավերը։ Համագումարի բաց-
մանը ներկա էին ավելի քան 10 հազար մարդ։

Համագումարը հավաքվել էր, որպեսզի ստեղծի
նոր պարտիա՝ նվիրված խաղաղության ու պրոգրեսի
գործին, առաջադրի թեկնածուներ պրեզիդենտի և
վիցե-պրեզիդենտի պոստերի համար և ընդունի ընտ-
րական ծրագիր։

Համագումարը պաշտոնապես ընդունեց «Պրոգրե-
սիվ պարտիա» մշտական անունը։

Համագումարը քննություն առավ և ընդունեց նոր
պարտիայի կանոնադրությունը, ըստ որի պրոգրեսիվ

պարտիան պետք է ամեն տարի հավաքվի ազգային համագումարի, իսկ ազգային կոմիտեն՝ չորս ամիսը մեկ անգամ։

Այնուհետև համագումարը միահամուռ կերպով պրոգրեսիվ պարտիայի կողմից Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտի պոստի համար թեկնածու ընտրեց նախկին վիցե-պրեզիդենտ Հենրի Ուոլլեսին և վիցե-պրեզիդենտի պոստի համար՝ սենատոր Գլեն Թեյլորին։

Հուլիսի 24-ի երեկոյան «Շայբ պարկ» ստադիոնում տեղի ունեցավ միտինգ, որին ներկա էին ավելի քան 30 հազար մարդ։ Միտինգում Ուոլլեսը և Թեյլորը հանդես եկան ճառերով։ Նրանք ընդգծեցին նոր պարտիայի նպատակները և մեղադրեցին ռեսպուբլիկական և դեմոկրատական պարտիաներին խոշոր կապիտալի շահերին աջակցելու մեջ, ի վնաս ժողովրդական լայն մասսաների։ Ուոլլեսը և Թեյլորը պնդում էին, որ հնարավոր է ու անհրաժեշտ համագործակցությունը Սովետական Միության հետ։

Միտինգի մասնակիցները Ուոլլեսին և Թեյլորին դիմավորեցին բուռն օվացիաներով։

Համագումարը քննության առավ պրոգրեսիվ պարտիայի ընտրական ծրագիրը։

Ընդգծելով, որ պրոգրեսիվ պարտիան առաջ է եկել ամերիկյան ժողովրդի համար խաղաղություն, ազատություն և առատություն ապահովելու անհրաժեշտության հետևանքով, ընտրական ծրագրերում մերկաց-



վում են մոնոպոլիստական կապիտալին ծառայող ռեսպուբլիկական և դեմոկրատական պարտիաները, նրանց երկպարտիական ներքին ու արտաքին քաղաքականությունը, որը տանում է դեպի ժողովրդական մասսաների ստրկացում, դեպի պատերազմ։

Պրոգրեսիվ պարտիայի համագումարը ընտրական ծրագրում պահանջում է բարեկամական հարաբերություններ հաստատել Սովետական Միության հետ, պահանջում է հրաժարվել «Մարշալի պլանից» և «Տրումենի դոկտրինայից», դադարեցնել ռազմատնտեսական միջամտությունը, որի նպատակն է պաշտպանել ֆաշիստական ռեակցիոն ռեժիմները Չինաստանում, Հունաստանում, Թյուրքիայում և այլն։ Ծրագիրը կոչ է անում ամրապնդել Միավորված Ազգերի Կազմակերպությունը և համաշխարհային համաձայնության գալ զինաթափման մասին։

Ներքին քաղաքականության ասպարեզում ծրագիրը նախատեսում է դադարեցնել ռասսայական խտրության և խտրականության բոլոր ձևերը, պետության ձեռքը հանձնել էկոնոմիկայի հիմնական ճյուղերը, անհապաղ վերացնել Տաֆտ-Հարտլիի հակբանվորական օրենքը, կոնստիտուցիայով պաշտպանել դեմոկրատական կազմակերպությունների իրավունքները։

Պրոգրեսիվ պարտիայի հիմնադիր համագումարը օրանով ավարտեց իր աշխատանքները։ Նա մեծապես նպաստեց ամերիկյան դեմոկրատիայի ուժերի համախմբմանը իմպերիալիստական ռեակցիայի դեմ մղվող պայքարում։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայաստանի Պետական Հրատարակչությամբ վերջերս լույս են տեսել հետևյալ քաղաքական գրքերն ու բրոշյուրները։*

1. Կ. ՄԱՐՔՍ— «Փիլիսոփայության աղքատությունը»: *(Պատասխան Պ. Պրուդոնի «Աղքատության փիլիսոփայությանը»)։ Տիրաժ 3000 օրինակ. 233 էջ, գինը՝ 10 ռուբլի։*

2. Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի ամենաբարձր ստադիա»: *(Հանրամատչելի ակնարկ)։ Տիրաժ՝ 6000 օր. 147 էջ, գինը՝ 5 ռուբլի։*

3. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Երկեր *(16 հատորյակի 3-րդ հատորը)։ Այս հատորն ընդգրկում է 1917 թ. մարտ-հոկտեմբեր ժամանակաշրջանը և բովանդակում է ընկեր Ստալինի այդ շրջանում գրած ճառերը, հոդվածները, ելույթները թվով՝ 79 հատ։ Տիրաժ՝ 20.000 օրինակ, 486 էջ, գինը՝ 10 ռուբլի։*

4. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— «Մարքսիզմը և ազգային հարցը»: *Տիրաժ 6000 օրինակ, 94 էջ, գինը՝ 1 ռուբլի։*

5. Մ. ՍՏԵՊԱՆՈՎ—«ՀՄԴԲՊ ծրագրի պատմության հարցի շուրջը»: *Տիրաժ՝ 6000 օր. 111 էջ, գինը՝ 3 ռուբլի։*

6. Ն. Կ. ԻՎԱՆՈՎ— «Սովետական պետու-



թյունը նոր տիպի պետություն է»: *Տիրաժ 3000 օր. 89 էջ, գինը՝ 2 ռուբլի։*

7. Ա. ԿՈՎԱԼԵՎՍԿԻ (գեներալ-մայոր)— «Սովետական բանակը խաղաղության և անվտանգության պահպանության դիրքերում»: *Տիրաժ՝ 3000 օր. 52 էջ, գինը՝ 50 կոպեկ։*

8) «Պատմության կեղծարարները». *(Պատմական տեղեկանք)։ Տիրաժ՝ 5000 օր. 78 էջ, գինը՝ 2 ռուբլի։*

*«Ագիտատորի գրադարան» սերիայով մամուլի տակ են և շուտով լույս կտեսնեն.*

1) Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ— «Քաղաքական ագիտացիայի մասին»:

2) ԿԱԼԱՇՆԻԿՈՎ— «Բոլշևիկյան ագիտացիայի հիմնական գծերը»:

3) Գ. ԳԼԱԶԵՐՄԱՆ— «Ինչպես նախապատրաստել և անցկացնել զրույցը»:

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

*ՎՖ 04275 Պատվեր № 525 Տիրաժ 9.100*
*Ստորագրված է տպագրության 11/VIII 1948 թ.*
*Պոլիգրաֆ. և Հրատ. Վարչ. № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
Блокнот Агитатора

